ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78:*

**Адрес редакции**—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 21
ՆՈՅԵՄԲԵՐ
1963

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ ՆՈՐ ԱՇԽԱՐՀԻ ԴՐՈՇՆ Է

«Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»: *Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի կողմից ավելի քան 100 տարի առաջ հռչակված այս բոցաշունչ կոչի մեջ արտահայտված է հին աշխարհի, շահագործական կարգի դեմ հաղթանակի գլխավոր պայմաններից մեկը։ Աշխատավորների մեծ ուսուցիչներն ընդգծում էին, որ յուրաքանչյուր առանձին երկրի բանվոր դասակարգը, պայքարելով իր ազգային բուրժուազիայի դեմ, դրանով իսկ պայքարում է միջազգային բուրժուազիայի ջոկատներից մեկի, բոլոր ժողովուրդների ընդհանուր թշնամու դեմ։*

*Պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի դարաշրջանում Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն հիմնավորեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, որոնք ռևոլյուցիոն մարքսիզմի բաղկացուցիչ մասն են։* Կապիտալը, գրել է նա, միջազգային ուժ է, և նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային դաշինք, նրանց միջազգային եղբայրություն:

*Բարձր պահելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ անհաշտ պայքար էր մղում ռեակցիոն նացիոնալիզմի այն գաղափարախոսության դեմ, որը արտահայտում է իմպերիալիզմի զավթողական ձգտումները։ Մոնոպոլիստական կապիտալը պրակտիկայում այդ գաղափարա-*

խոսությանը տալիս է չափազանց հակաժողովրդական ձևեր՝ շովինիզմ, կոսմոպոլիտիզմ, ռասիզմ։

Իմպերիալիստները ռեակցիոն նացիոնալիզմն օգտագործում են աշխատավորների դասակարգային գիտակցությունը մթագնելու, մի ժողովրդի մյուսի դեմ գրգռելու, կապիտալի դեմ մղվող պայքարից պրոլետարիատի և նրա դաշնակիցների ուշադրությունը շեղելու համար։ Այսպես. ամերիկյան ռեակցիան ռասայական թեորիաներով արդարացնում է նեգրերի ջարդերը։ Իրաքում շովինիզմի դրոշի ներքո արյունահեղ հաշվեհարդար են տեսնում կոմունիստների, բոլոր դեմոկրատների նկատմամբ, ճնշում են քրդերի ազատագրական շարժումը։

Հին աշխարհին, որտեղ իշխում է ազգային և սոցիալական ճնշումը, բանվոր դասակարգն ու նրա մարքսիստական-լենինյան պարտիաները հակադրում են նոր աշխարհը։ Նրանում տեղ չկա ոչ որևէ ժողովրդի արտոնության, ոչ մարդու կողմից մարդու նույնիսկ ամենափոքր շահագործման համար։ Այդպիսի աշխարհում դասակարգերի հակամարտության վերացման հետ միասին վերանում է նաև ազգերի հակամարտությունը, ընդմիշտ խորտակվում են ռասայական պատնեշները, ժողովուրդների թշնամությանը փոխարինելու է գալիս նրանց իսկական եղբայրական բարեկամությունը։

Ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարները մարդկության պատմության մեջ առաջին անգամ հաղթեցին մեր երկրում։ Դրանք հանդիսացան այն հզոր ուժը, որը Ռուսաստանի բանվոր դասակարգին օգնեց չքավորագույն գյուղացիության հետ դաշինք կնքած կատարելու Հոկտեմբերյան ռևոլյուցիան և ՍՍՌՄ-ում կառուցելու սոցիալիզմ։ Ցարիզմի կողմից իրարից անջատված և ճնշված ժողովուրդներին միավորելով միասնական եղբայրական ընտանիքում, կոմունիստական պարտիան ապահովեց սոցիալիստական պետության ծաղկումը։

Նոր պետության մեջ տեսնելով խաղաղության և սոցիալիզմի ամրոց, ամբողջ երկրագնդի աշխատավորները բարոյապես օգնում էին սովետների երկրին, նրան պաշտպանում միջազգային ռեակցիայի զրպարտություններից։ Իրենց հերթին սովետական մարդիկ նոր կյանքի կառուցման գործում իրենց վիթխարի հաջո-






ղություններով մեծապես հեշտացնում էին աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։ Այժմ նույնիսկ մեր թշնամիները խոստովանում են, որ առանց ՍՍՌՄ-ի հսկայական ջանքերի հնարավոր չէր լինի ֆաշիզմի ջախջախումը անցած պատերազմում։

Սովետական ժողովրդի հերոսական մեծ սխրագործությունը շարժման մեջ դրեց և ոգևորեց բոլոր մայրցամաքների աշխատավոր մարդկանց։ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում ժողովուրդները հաղթանակ տարան ռեակցիայի նկատմամբ, ընթացան Հոկտեմբերի ճանապարհով։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումով ինտերնացիոնալիզմի սկզբունքները տարածվեցին նաև այդ սիստեմի մեջ մտնող պետությունների հարաբերությունների վրա, դարձան նոր կյանքի կառուցման հիմքը։

Բուրժուական գաղափարախոսները աղաղակում են, թե՝ իբր կոմունիստները չունեն և չեն կարող ունենալ սիրո զգացմունքներ հայրենիքի նկատմամբ։ Իսկ իրականում պրոլետարական ինտերնացիոնալիզմը ոչ միայն չի հակասում իսկական հայրենասիրությանը, այլ, ընդհակառակը, համընկնում է նրա հետ և թույլ է տալիս իր ժողովրդի շահերի պաշտպանությունը ճիշտ զուգակցելու մյուս ժողովուրդների շահերի հետ։

Մեր դարաշրջանում, երբ գոյություն ունի համաշխարհային սոցիալիստական սիստեմը, հայրենասիրությունը նոր բովանդակություն է ստացել։ ՍՍՌՄ-ի և ժողովրդադեմոկրատական երկրների աշխատավորների համար թանկ են ոչ միայն իրենց նվաճումները, այլև սոցիալիզմի ամբողջ լագերի հաջողությունները։ Պայքարելով ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ներդաշնակ զուգակցման համար, կոմունիստական ու բանվորական պարտիաները շարունակ ամրապնդում են դրանք։ «Սոցիալիստական երկրների ժողովուրդների ընդհանուր շահերը,— ընդգծված է այդ պարտիաների ներկայացուցիչների՝ 1960 թվականին տեղի ունեցած խորհրդակցության հայտարարության մեջ,— սոցիալիզմի և խաղաղության գործի շահերը պահանջում են քաղաքականության մեջ ճիշտ զուգակցել սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության սկզբունքները»։

Եղբայրական երկրների փոխհարաբերությունների մեջ հաղթանակած այդ սկզբունքները առավել լրիվ կերպով արտահայտում են նաև այդ երկրների ժողովուրդների ազգային շահերը, ապահովում են նրանց իսկական իրավահավասարություն և անկեղծ փոխօգնություն։ Պրակտիկան ցույց է տալիս, որ սոցիալիստական համագործակցության մեջ ավելի արագորեն են զարգանում էկոնոմիկան ու կուլտուրան։

Ուստի եղբայրական ժողովուրդների մեջ զարմանք է առաջացնում չինական ղեկավարների նացիոնալիստական դիրքը, որը քողարկված է «գլխավորապես սեփական ուժերով սոցիալիզմ կառուցելու» տեսության մեջ։ Չինաստանի կոմպարտիայի դոգմատիկները այդ ֆորմուլայով քողարկում են ինքնաբավ ազգային տնտեսությունների ստեղծման քաղաքականությունը։ Այդ քաղաքականությունը պառակտիչներին ծառայում է սոցիալիզմի երկրների համագործակցության մի շարք կարևոր ձևերի նկատմամբ, Տնտեսական փոխօգնության խորհրդի նկատմամբ իրենց բացասական վերաբերմունքը արդարացնելու համար։ Չինական զրպարտիչները պնդում են, թե իբր Տնտեսական փոխօգնության խորհուրդն ստեղծվել է մոնոպոլիստական «ընդհանուր շուկայի» օրինակով։

Սակայն Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության արդյունքները հերքում են չինական ղեկավարների սուտն ու հերյուրանքը։ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների կենտրոնական կոմիտեների առաջին քարտուղարների և կառավարությունների ղեկավարների վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունը կրկին ցուցադրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ ուժը, նոր աշխարհի պետությունների տնտեսական համագործակցության իսկական սոցիալիստական բնույթը, որը տարեցտարի ընդլայնվում և ամրապնդվում է։

Ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա զարգանում է աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, կատարելագործվում են սոցիալիզմի երկրների համագործակցության ձևերը։ Արտաքինառևտրական և գիտատեխնիկական երկկողմանի փոխանակումից, որը սոցիալիզմի լագերի համար բնորոշ էր նրա կազմավորման ժամանակաշրջանում, վերջին



տարիներս անցում է կատարվում դեպի ուղղակի արտադրական համագործակցության։ 1959 թվականից սկսվեց ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանների կոորդինացումը։ Համաձայնեցված են տնտեսական փոխօգնության անդամ պետությունների մինչև 1965 թվականը նախատեսված տնտեսական պլանները։

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը, արտադրության կոոպերացումն ու մասնագիտացումը լայն ասպարեզ բացեցին սոցիալիստական պետությունների առջև ծառացած նոր պրոբլեմների լուծման համար։ Սոցիալիզմի երկրները միայն իրենց ինտերնացիոնալ կապերն ամրապնդելով, իրենց համագործակցության ձևերը կատարելագործելով կարողացան սկսել այնպիսի խոշոր օբյեկտների կառուցումը, ինչպիսիք են «Բարեկամություն» նավթամուղը և «Խաղաղություն» էլեկտրահաղորդման գիծը։

Սոցիալիստական պետությունների միջև վերջին ժամանակներս զարգացող տնտեսական կապերը համապատասխանում են նրանց ժողովուրդների կենսական շահերին։ Արդեն այժմ երևում են Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների կողմից կոլեկտիվ կերպով ստեղծվող կամ ստեղծվելիք ձեռնարկությունների մեծ օգուտները։ Այսպես. դրանց արդյունաբերական արտադրությունը 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, աճեց մոտավորապես 9 տոկոսով, մինչդեռ Արևմտյան Եվրոպայի երկրներում այն աճել է միայն 4 տոկոսով։

«Այժմ,— ասել է Ն. Ս. Խրուշչովը Հարավսլավիայի Վելեն քաղաքում տեղի ունեցած միտինգում,— մարդիկ կարող են սոցիալիզմի առավելությունների մասին դատել ոչ միայն Մարքսի, Էնգելսի, Լենինի գիտական աշխատություններն ուսումնասիրելով, այլ առաջին հերթին պրակտիկայում, կյանքում, սոցիալիզմի երկրների հաջողությունների հիման վրա։ Հաջողությամբ կառուցելով սոցիալիզմ, կոմունիզմ, մենք դրանով իսկ կատարում ենք ռևոլյուցիոներների, մարքսիստ-լենինյանների մեր ինտերնացիոնալ պարտքը»։

Եղբայրական երկրների տնտեսական զարգացման տեմպերի արագացման գործում բացառիկ մեծ դեր է կատարում Սովետական Միությունը, որը առավել հզոր

սոցիալիստական տերություն է։ Բավական է ասել, որ միայն այս տարի ՍՍՌՄ-ը ժողովրդադեմոկրատական պետություններին սարքավորումներ է մատակարարում կառուցվող 286 ձեռնարկությունների և օբյեկտների համար, իսկ առհասարակ մեր երկրի օգնությամբ հետպատերազմյան տարիներին (մինչև 1962 թվականը) կառուցվել են 1140 ձեռնարկություն և օբյեկտ։

Սովետական մարդիկ սոցիալիստական շինարարության իրենց ամբողջ բազմամյա փորձը սրտաբաց կերպով հաղորդել են նաև չին ժողովրդին։ Մեր երկրի ակտիվ օգնությամբ ՉԺՌ-ն կառուցել է 198 արդյունաբերական ձեռնարկություն, ցեխ և օբյեկտ, որը բնականաբար, նրա ժողովրդին հնարավորություն է տվել ավելի արագորեն հաղթահարելու անցյալի ծանր ժառանգությունը, հաջողությամբ զարգացնելու էկոնոմիկան, պատրաստելու ազգային կադրեր։

«Չինական ղեկավարներին, չգիտես ինչու, դուր չի գալիս, երբ մենք վերհիշում ենք այդ,— ասված է սովետական կառավարության սեպտեմբերի 21-ի հայտարարության մեջ։— Բայց մենք մեր օգնության մասին խոսում ենք ոչ թե պարծենալու համար, այլ որպեսզի ժողովուրդներն իմանան, որ սովետական մարդիկ ազնըվորեն են կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը եղբայրական չին ժողովրդի հանդեպ։ Մեղքը մերը չէ, որ ՉԺՌ-ի ղեկավարները սահմանափակել են տնտեսական համագործակցությունը Սովետական Միության հետ և, այդպիսով, չին ժողովրդին զրկել Սովետական Միության անշահախնդիր օգնությունից օգտվելու հնարավորությունից»։

Ձգտելով հասնել իրենց հատուկ ավանգարդիստական նպատակներին, չինական ղեկավարները փորձում են սեպ խրել ՍՍՌՄ-ի ու մյուս սոցիալիստական երկըրների և ազգային-ազատագրական շարժման համագործակցության մեջ։ Բայց նրանց ավանտյուրիստական այդ կուրսը ևս ձախողվում է։ Թույլ զարգացած երկըրների ժողովուրդներին քաջ հայտնի է, որ հենց լենինիզմի ու Հոկտեմբերի հայրենիքն է իրենց իսկական ու հավատարիմ բարեկամը, որը շարունակ իրենց օգնել և օգնում է իմպերիալիզմի ու գաղութակալության լծից ազատագրվելու, նոր կյանք կառուցելու համար մղվող պայքարում։



Այս ամենը վկայում է, որ ՍՄԿԿ-ի և սովետական սոցիալիստական պետության քաղաքականությունը ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ։

Վ. Ի. Լենինը, սահմանելով կոմունիստների ինտերնացիոնալիզմի ստուգման չափանիշը, գրել է. «...Պետք է մտածել ոչ թե միայն իր ազգի մասին, այլ նրանից ավելի բարձր պետք է դասել բոլորի շահերը, նրանից ընդհանուր ազատությունն ու իրավահավասարությունը» (Երկեր, հատ. 22, էջ 467)։

Ինտերնացիոնալիզմի լենինյան այս սկզբունքը, ինչպես և շատ ուրիշներ, մոռացության են մատնել չինական ղեկավարները։ Փաստերը վկայում են, որ նրանք իրականացնում են սոցիալիզմի լագերի և ամբողջ համաշխարհային կոմունիստական շարժման գծից տարբերվող գիծ։

Պեկինի «տեսական» վարժությունները զունազարդված են նացիոնալիստական ներկերով։ Ներկայումս Չինական ռեսպուբլիկայում «Պրոլետարներ բոլոր երկըրների, միացե՛ք» կոչի փոխարեն, որն արտահայտում է դասակարգային ինտերնացիոնալ մոտեցումը հասարակական զարգացման երևույթներին, համառորեն պրոպագանդվում է դասակարգային բովանդակությունից զուրկ՝ «Արևելքից փչող քամին ճնշում է Արևմուտքից փչող քամուն» լոզունգը։

Ուստի պատահական չէ, որ Ասիայի և Աֆրիկայի երկրների ժողովուրդների՝ 1963 թվականի գարնանը Մոշիում տեղի ունեցած համերաշխության կոնֆերանսում չինական պատվիրակները հանդես եկան այդ կոնֆերանսին սոցիալիստական պետությունների ներկայացուցիչների մասնակցության դեմ։ ՉԺՌ-ի պատվիրակության ղեկավարը հայտարարեց, թե «սպիտակամորթները Մոշիում անելիք չունեն»։ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության կազմակերպության գործկոմի սեսիայում, որը տեղի ունեցավ Նիկոզիայում, ՉԺՌ-ի ներկայացուցիչները նորից արտահայտվեցին բոլոր ազգերի ռևոլյուցիոն ու դեմոկրատական ուժերի միավորման դեմ, ժողովուրդներին կոչ էին անում իմպերիալիզմի դեմ մղվող մարտերում համախմբվել ոչ թե դասակարգային, այլ ռասայական սկզբունքով, ըստ մաշկի գույնի։

Չինական ղեկավարության կողմից նացիոնալիզմն ու շովինիզմն ավելի ու ավելի են տարածվում նաև միջպետական հարաբերություններում։ Վերջին ժամա-

նակներն ՉԺՌ-ի կառավարությունը հարևան երկրների սահմաններում թույլ է տալիս այնպիսի գործողություններ, որոնք անհամատեղելի են լենինյան ինտերնացիոնալ քաղաքականության հետ։ Ժողովրդի ուշադրությունը կանխամտածված կերպով կենտրոնացնելով տերիտորիալ պրոբլեմների վրա, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները արհեստականորեն բորբոքում են նացիոնալիստական կրքեր, ատելություն մյուս երկրների նկատմամբ։

Նահանջելով միջազգային կոմունիստական շարժման կողմից ճանաչված ՍՄԿՊ XX և XXII համագումարների կուրսից, 1957 և 1960 թվականների Դեկլարացիայից ու Հայտարարությունից, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն ավելի ու ավելի են միջամտում եղբայրական պարտիաների ներքին կյանքին, պաշտպանում են մասսաների մեջ հենարան չունեցող պառակտիչների և ռենեգատների խմբերին, արտատպում և տարածում են ՍՍՌՄ-ի ու սոցիալիստական մյուս պետությունների դեմ ուղղված նյութեր։ Դրա հետ մեկտեղ չինական պառակտիչները ձգտում են քայքայել միջազգային դեմոկրատական կազմակերպությունները։ ՉԺՌ-ի ներկայացուցիչները կանանց համաշխարհային կոնգրեսում իրենց հակադրեցին այդ կոնգրեսի մասնակից կանանց բացարձակ մեծամասնությանը։

Չինական ղեկավարների դիրքը ժամանակակից իրադարձությունների գնահատման հարցում աղաղակիչ կերպով հակասում է ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքներին։ Մասնավորապես դրա նոր վկայությունն է ՉԺՌ-ի կառավարության հանդես գալը՝ մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրի տակ միջուկային փորձարկումների արգելման Մոսկվայի պայմանագրի դեմ։ Այդ պայմանագրի նկատմամբ չինական ղեկավարները ամբողջովին բաժանում են խաղաղ գոյակցության քաղաքականության դեմ եռանդուն հանդես եկող առավել ռեակցիոն իմպերիալիստական շրջանների տեսակետը։

Դժվար չէ հասկանալ, թե ինչ է թաքնված չինական պառակտիչների «փաստարկների» ետևը, պառակտիչներ, որոնք մերժում են արդեն աշխարհի ավելի քան 90 պետության կողմից ստորագրված պայմանագիրը։ Պեկինյան «հսկաների», ինչպես նրանք իրենց անվանում են, իսկական պատճառը հետևյալն է. ինչ գնով էլ



չինի՝ հասնել սեփական ատոմային ռումբի արտադրության։ Չինական կառավարության հայտարարություններից մեկում ուղղակի ասված է, թե իբր Չինաստանին խանգարելով միջուկային զենք արտադրելու գործում, Սովետական Միությունը դրանով իսկ չի հետևում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Իսկ իրականում այդ սկզբունքներից նահանջել է չինական կառավարությունը, որն ունի սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների շահերին հակասող ինչ-որ հատուկ նպատակներ ու շահեր։ Սեփական ատոմային ռումբի ստեղծման համար պայքարելով այն ժամանակ, երբ ՉԺՌ-ի անվտանգությունը ապահովվում է ՍՍՌՄ-ի և սոցիալիզմի ամբողջ լագերի հզորությամբ, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները նորից են հաստատում իրենց հակաինտերնացիոնալիստական դիրքը արտաքին քաղաքականության հարցերում, բացահայտորեն ցուցադրում են իրենց անհավատությունը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ուժերի նկատմամբ։

Ինչպես հայտնի է, նրանց այդ դիրքը տանում է դեպի միջազգային լարվածության սրում և նույնիսկ ժողովուրդներին հրում է դեպի ջերմամիջուկային պատերազմ։ Հիշենք, թե չինական ղեկավարներն իրենց ինչպես էին պահում Կարաիբյան ճգնաժամի օրերին, երբ ՍՍՌՄ-ն առանց տատանման կշեռքի նժարի վրա դրեց իր ամբողջ միջազգային հեղինակությունը, իր ռազմական հզորությունը, որպեսզի կանգնեցնի հերոսական Կուբայի վրա կախված ագրեսորների ձեռքը։ Դա սոցիալիզմի քննությունն էր, և նա պատվով դուրս եկավ այդ քննությունից։

Բոլորին հայտնի է, որ Սովետական Միությունն է կոմունիստական շինարարության ճակատներում իր հսկայական հաջողություններով առավել ուժեղ հարվածները հասցնում իմպերիալիզմին, որ հենց սովետների երկիրն է ամենից շատ բան արել և անում խաղաղության ամրապնդման, համայն աշխարհում կոմունիզմի հաղթանակի համար։

Հաջողությամբ կոմունիզմ կառուցելով, մեր ժողովուրդը լուսավորում է ամբողջ մարդկության ուղին դեպի պայծառ ապագա։

Ն. ՏԱՐԱՍԵՆԿՈ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻԼԻՑԻԱՅԻ ՕՐԸ

ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության 1962 թվականի սեպտեմբերի 27-ի հրամանագրով նոյեմբերի 10-ը սահմանված է «Սովետական միլիցիայի օր»։ Սովետական միլիցիան, որպես ռևոլյուցիոն կարգուկանոնի օրգան, ստեղծվել է 1917 թվականի հոկտեմբերի 28-ին (նոյեմբերի 10-ին) Վլադիմիր Իլյիչ Լենինի նախաձեռնությամբ։ Իր գոյության ընթացքում սովետական միլիցիան անսասանորեն պաշտպանել և պաշտպանում է մեր հայրենիքի, մեր ժողովրդի շահերը։ Միլիցիայի բազմաթիվ աշխատողներ աշխատանքում ցուցաբերած հերոսության և անձնազոհության համար արժանացել են կառավարական բարձր պարգևների։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովրդի հետ միասին ֆաշիստների դեմ անվեհեր պայքարում էին նաև միլիցիայի աշխատողները։ Այդ օրերին իրենց անձնուրաց գործերով աչքի ընկան հատկապես հերոս քաղաքների՝ Լենինգրադի, Վոլգոգրադի և Մոսկվայի միլիցիայի աշխատողները։ Եվ պատահական չէ, որ Վոլգոգրադում հոյակապ հուշարձան է կառուցվել ֆաշիստների դեմ մղվող մարտերում զոհված ՆԳՄ զորքերի մարտիկների, սպաների, և միլիցիայի աշխատողների պատվին։

Անձնվեր ծառայության, ցուցաբերած կայունության, խիզախության և հնարամտության համար միլիցիայի շատ աշխատողներ պարգևատրվել են շքանշաններով։

Միլիցիան ժողովուրդների շահերի հավատարիմ պաշտպանն է։ Նա պայքարում է նրանց դեմ, ովքեր խախտում են սովետական մարդկանց անդորրը և երջանկությունը, նրանց դեմ, ովքեր հափշտակում են ժողովրդական բարիքը։ Շոգ օրերին, անձրևի և ձյան ժամանակ, օր ու գիշեր իրենց պոստում կանգնած են պետավտոտեսչության, արտաքին ծառայության աշխատողները, պահպանելով մարդկանց կյանքը, սոցիալիստական սեփականությունը։

Մեր ռեսպուբլիկայի միլիցիայի օպերատիվ աշխատողները քիչ աշխատանք չեն կատարել, որպեսզի մերկացնեն հանցագործ տարրերին և հնարավորություն չտան նրանց իրագործելու իրենց գազրելի մտադրությունները։



Իրենց անբասիր ծառայությամբ ժողովրդի հարգանքն են վայելում պետավտոտեսչության և արտաքին ծառայության շատ աշխատողներ։

Լավ աշխատանքով հրամանատարներից ետ չեն մնում նաև շարքային միլիցիոներները։ Օրինակ. Էջմիածնի շրջանային միլիցիայի բաժնի միլիցիոներ Ս. Վարդանյանը, վտանգավոր հանցագործին հետապնդելիս, մեքենայի ընթացքի ժամանակ, ԳԱԶ—69 ավտոմեքենայից իրեն նետում է մեծ արագությամբ ընթացող ԶԻԼ—585 ավտոմեքենայի խցիկը։ Նա ատրճանակի բռնակով շշմեցնում է կատաղաբար դիմադրություն ցույց տվող հանցագործին և միլիցիայի մյուս աշխատողների օգնությամբ բռնում բանդիտին։

Խոսելով հանցագործության դեմ մղվող պայքարում միլիցիայի և հասարակայնության ազնիվ աշխատանքի մասին, չի կարելի չնշել նաև մեր քրեագետների նվիրվածությունը, որոնք իրենց հետազոտություններով, իրեղեն ապացույցներ հայտնաբերելով, օգնում են հանցագործների մերկացմանը։

Հետաքրքիր է նշել, որ քրեագետի օգնությանն են դիմում ոչ միայն միլիցիայի, դատախազության, դատարանի աշխատողները, այլև պատմաբանները, գրականագետները, երաժիշտները։ Սովետական քրեագետների օգնությամբ վերականգնվել է Չայկովսկու «Վարիացիաներ ռոկոկո թեմայով» յուրօրինակ երաժշտությունը։ Միլիցիայի էքսպերտներն ապացուցել են, որ այսպես կոչված հավատարիմ հպատակության նամակը՝ ուղղված թագավորին, գրված է ոչ թե Ա. Ս. Պուշկինի այլ Բախմետևի կողմից և այլն։

Հիրավի շատ մեծ և ազնիվ գործեր են կատարել սովետական միլիցիայի աշխատողները։ Սակայն դա չի նշանակում, որ միլիցիայի աշխատանքում թերություններ չկան։ Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության պահանջները հանցագործությունների վերացման վերաբերյալ դեռ լրիվին չեն իրագործվել։ Արմատախիլ չեն արվել այնպիսի անհանդուրժելի փաստեր, ինչպիսիք են ժողովրդական բարիքի հափշտակումը և ավտովթարները։ Մեր առանձին օղակներում դեռ ցածր է աշխատանքի կուլտուրան։

Համոզված ենք, որ միլիցիայի աշխատողները պատվով կկատարեն պարտիայի կողմից իրենց առջև դրված կարևոր խնդիրները։

Ն. ՎԱՐԴԱՆՅԱՆՑ
Միլիցիայի գնդապետ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՇՆՈՐՀԻՎ

Այս տարվա փետրվար ամիսն էր։ Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության գյուղատնտեսության աշխատողները օրինակելի նախաձեռնություն հանդես բերեցին։ Նրանք մեր երկրում նոր թափով բորբոքեցին համաժողովրդական սոցիալիստական մրցությունը և կոչ արեցին սովետական մարդկանց ուրախացնել առատ բերքով, անասնաբուծական շատ մթերքներ արտադրելով։

Կուբանի հողագործների կոչը լայն արձագանք գտավ նաև Սևանի արտադրական վարչության Աթարբեկյանի կաթնաանասնապահական սովխոզում։ Երբ ագիտատոր Ս. Ջալիբեկյանը կթվոր-անասնապահներին ծանոթացնում էր ուստ-լաբինսկցիների դիմումի հետ, առաջավոր կթվորուհի Ա. Այվազյանը ասաց.

— Կուբանի մեր բարեկամները կոչ են անում սոցիալիստական մրցություն ծավալել երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։ Այդ սուրբ նպատակին հասնելու համար եկեք մենք էլ մտնենք մրցության մեջ, բարեկամական համագործակցություն հաստատենք մրցության նախաձեռնողների հետ, սովորենք նրանցից։

Խոսեց նաև ագիտկոլեկտիվի ղեկավար Վ. Վարդանյանը։ Ֆերմայի աշխատողները ցանկություն հայտնեցին սոցիալիստական մրցության մեջ մտնել Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության «Լադոժսկայա» սովխոզի հետ։ Հաջորդ օրը Աթարբեկյանի սովխոզի կթվոր-անասնապահները մի սրտառուչ նամակ ուղարկեցին իրենց կուբանցի բարեկամներին։

Չանցավ մի շաբաթ և Աթարբեկյանի սովխոզի կոլեկտիվը իրենց թանկագին եղբայրներից ստացավ պատասխան նամակը, որտեղ նրանք կոչ էին անում ջանք չխնայել վերցրած պարտավորությունները կատարելու համար։ «Եկեք աշխատենք այնպես, որպեսզի մեր մեջ ետ մնացողներ չլինեն։ Մենք պարտավորվում ենք յուրաքանչյուր հեկտարից ստանալ 38 ցենտներ ցորեն, 32 ցենտներ գարի, ամեն մի կովից կթել 2.300 կիլոգրամ կաթ, իսկ հարյուր հեկտար հողատա-



րածության դիմաց արտադրել 340 ցենտներ կաթ, 100 հեկտար վարելահողի հաշվին՝ 125 ցենտներ միս»։

Այսպես ծնունդ առավ «Լադոժսկայա»—Աթարբեկյան սովխոզների մրցությունը։ Ագիտատորները սկսեցին զրույցների միջոցով մասսայականացնել սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Աչքի ընկնող տեղերում փակցվեցին լոզունգներ, որոնք կթվոր-անասնապահներին կոչ էին անում անթերի կատարել ստանձնած պարտավորությունները։ Ագիտկոլեկտիվի ղեկավարի հանձնարարությամբ սովխոզի ակումբում փակցվեցին անասնապահական երկու բրիգադների, ինչպես նաև իրար հետ մրցող բոլոր կթվորուհիների ցուցատախտակներ, որոնցից հայտնի է դառնում, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը։

Ագիտկոլեկտիվի ղեկավարը չի սահմանափակվում միայն դրանով։ Նա նամակագրական սերտ կապ է հաստատել մրցակից «Լադոժսկայա» սովխոզի դիրեկտորի ու պարտկազմակերպության հետ, նրանցից ստանում է տեղեկություններ այն մասին, թե իրենք ինչպես են կատարում վերցրած պարտավորությունները։ Այնուհետև սովխոզում ստացվում է Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության «Սելսկայա նով» թերթը, որտեղ «Լադոժսկայա» սովխոզի հաջողությունների մասին տպագրված նյութերը ագիտատորները մասսայականացնում են աշխատավորների շրջանում։ Դա բավականաչափ օգնում է աթարբեկյանցիներին։ Տեսնելով նրանց նվաճումները, սովխոզի կթվոր-անասնապահները ձգտում են եռանդով աշխատել, ետ չմնալ մրցակիցներից։

Վերջերս Աթարբեկյանի սովխոզի ներկայացուցիչները եղան «Լադոժսկայա» սովխոզում. Նրանց թվում էր նաև ագիտկոլեկտիվի ղեկավար Վ. Վարդանյանը։ Նա մոտիկից ծանոթացավ մրցակիցների աշխատանքի փորձին, ագիտացիոն-մասսայական աշխատանքի դրվածքին։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում «Առաջավոր փորձի կաբինետը»։ Ընդարձակ սենյակում դրված են ցուցադրական նյութեր, էքսպոնատներ։ «Մեր փարոսները» ստենդում փակցված են սովխոզի լավագույն մարդկանց լուսանկարները՝ նրանց աշխատանքի առաջավոր մեթոդների մասին կարճ հաղորդումներով։ Ա-

գիտատորները «Առաջավոր փորձի կաբինետում» ամեն երեկո զրույցներ են անցկացնում երկրում տիրող դրության, սովխոզի առաջավոր մարդկանց մասին, մոբիլիզացնում են սովխոզի աշխատողներին հայրենիքին տված խոստումը պատվով կատարելու համար։

Վերադառնալով կուբանցի բարեկամների մոտից, ագիտկոլեկտիվի ղեկավարը հրավիրեց բոլոր ագիտատորներին և նրանց պատմեց, թե ինչպես են «Լադոժսկայա» սովխոզի աշխատողները իրագործում իրենց պարտավորությունները։ Ահա նրանց բնագծերը։ Մեկ հեկտարից ստացվել է 40 ցենտներ հացահատիկ, անցած 9 ամսում յուրաքանչյուր կովից ստացվել է 2.000 կիլոգրամ կաթ և կաթի համախառն արտադրությունն արդեն կազմում է 32.500 ցենտներ։ Սովխոզը գերակատարել է պետությանը հացահատիկ, կաթ, միս, ձու վաճառելու տարեկան առաջադրանքները։

Բարեկամական համագործակցությունը և սոցիալիստական մրցությունը աչքի ընկնող հաջողությունների են հասցրել նաև Աթարբեկյանի սովխոզին։ Այստեղ կուտակված է մոտ մեկ ու կես տարվա կեր, 3.600 փթով գերակատարվել է հացամթերման պլանը։ Ավելի բարձր ցուցանիշների են հասել կթվոր-անասնապահները։ Ինն ամսում սովխոզը գերակատարել է կաթի արտադրության 1963 թվականի առաջադրանքը. 6.751-ի դիմաց արտադրված է 7.374 ցենտներ կաթ, կամ լադոժսկցիների տված խոստումից 374 ցենտներով ավելի, տարվա համար նախատեսված 1.410 ցենտների փոխարեն արդեն արտադրված է 1.010 ցենտներ միս։ Աթարբեկյանցիները գերակատարել են պետությանը 6.440 ցենտներ կաթ հանձնելու պարտավորությունը։ Նրանք խոստացել են լրացուցիչ արտադրել 1000 ցենտներ կաթ։

Այդ հաջողությունների մեջ մեծ է ագիտկոլեկտիվի կատարած աշխատանքը, ագիտատորների գաղափարական ճակատի, կոմունիզմի մարտիկների խոսքի, մոբիլիզացնող ուժը։

«Լադոժսկայա» և Աթարբեկյանի սովխոզների ներկայացուցիչների երկրորդ հանդիպումը տեղի կունենա Սևանի ափին։ Մրցակից բարեկամների գալուստին անհամբեր սպասում են աթարբեկյանցիները։

ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ



# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Նոր և պանծալի հաջողություններ ձեռք բերեցին մեր երկրի արդյունաբերության աշխատողները: Նրանք գերազանց ցուցանիշներով կատարեցին այս տարվա երրորդ եռամսյակի և ինն ամսվա պետական պլանը: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

★ Այս տարվա ինն ամսում Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի թողարկումը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 8,7 տոկոսով։

★ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ այս տարվա ինն ամսում ավելի է արտադրվել. չուգուն՝ 2,7 միլիոն տոննա, պողպատ՝ 3,1 միլիոն տոննա, գլանվածք՝ 2,4 միլիոն տոննա, պողպատե խողովակ՝ 94 միլիոն մետր, երկաթաքար՝ 7,7 միլիոն տոննա։

★ Նույն ժամանակամիջոցում ավելի է արտադրվել. նավթ՝ 14,9 միլիոն տոննա, գազ՝ 12 միլիարդ խորանարդ մետր, ածուխ՝ 9,6 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 31 միլիարդ կիլովատ-ժամ։

★ Դարձյալ նույն ժամանակամիջոցում ավելի է արտադրվել. հանքային պարարտանյութ՝ 1,7 միլիոն տոննա, գյուղատնտեսական մեքենա՝ 144 միլիոն ռուբլու, ծծմբաթթու՝ 546 հազար տոննա, ավտոդող՝ 1,2 միլիոն հատ, մետաղահատ հաստոց՝ 4,2 հազար հատ, ցեմենտ՝ 3,5 միլիոն տոննա և այլն։

★ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ժողովրդական սպառման ապրանքներից վուշե և մետաքսե գործվածքների արտադրությունը ավելացել է 145 միլիոն քառակուսի մետրով, կաշվե կոշիկները՝ 4,3 միլիոն զույգով, հեռուստացույցները՝ 201 հազար հատով, լվացքի մեքենաները՝ 357 հազար հատով, սառնարանները՝ 58 հազար հատով, կահույքինը՝ 112 միլիոն ռուբլով։ Նույն ժամանակաշրջանում զգալի չափերով ավելացել է սննդամթերքների արտադրությունը. հումքի պետական ռեսուրսների մսինը՝ 471 հազար տոննայով, անարատ կաթնամթերքներինը՝ 244 հազար տոննայով, ձեթինը՝ 95 հազար տոննայով, պահածոյինը 378 միլիոն տուփով։

★ Մեծ չափերով ավելացել է քիմիական արդյունաբերության արտադրանքի թողարկումը։ Սինթետիկ ձյութերի և պլաստմասսայի արտադրությունը այս տարվա 9 ամսում, անցյալ տարվա նույն ժա-

մանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 25 տոկոսով։

★ Անցած 9 ամսում արտադրվել է 14,2 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, 226 հազար տոննա արհեստական ու սինթետիկ թել, 771 հազար տոննա կաուստիկ սոդա, 1,9 միլիոն տոննա կալցինացված սոդա, 5 միլիոն տոննա ծծմբաթթու։

★ 9 ամսում արտադրվել է 43,6 միլիոն տոննա չուգուն, 59,6 միլիոն տոննա պողպատ, 46,3 միլիոն տոննա գլանվածք, 927 միլիոն մետր պողպատե խողովակ, 103 միլիոն տոննա երկաթաքար։

★ Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 152 միլիոն տոննա նավթ, 65,5 միլիարդ խորանարդ մետր գազ, 397 միլիոն տոննա ածուխ, 273 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

★ Մեր երկրում անընդհատ ավելանում է կարևորագույն մեքենաների ու սարքավորումների արտադրությունը։ Անցած 9 ամսում արտադրվել է 8,9 միլիոն կիլովատ տուրբիններ, 20,5 միլիոն կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչներ, 135 հազար հատ մետաղահատ հաստոցներ, 25,5 հազար հատ դարբնոցա-մամլիչային մեքենաներ, 1277 միլիոն ռուբլու սարք, 212 միլիոն ռուբլու քիմիական սարքավորում, 18,8 հազար հատ գործվածքային հաստոցներ։

★ Տարեցտարի ավելանում են տրանսպորտային միջոցները։ Միայն այս տարվա 9 ամսում արտադրվել է 1099 սեկցիա մագիստրալային ջերմաքարշ, 486 հատ մագիստրալային էլեկտրաքարշ, 443 հազար հատ ավտոմոբիլ, 16,7 միլիոն հատ ավտոդող։

★ Գյուղատնտեսությունը հագեցվել է նոր տեխնիկայով։ Ինն ամսում արտադրվել է 241 հազար հատ տրակտոր, 132 հազար հատ տրակտորի գութան, 148 հազար հատ տրակտորի շարքացան, 113 հազար հատ տրակտորի կուլտիվատոր, 62,5 հազար հատ զանազան կոմբայն, 5,1 հազար հատ չանաքի մեքենա, 78,5 հազար հատ տրակտորի հնձիչ, 10,5 հազար հատ հատիկազտիչ մեքենա։

★ Անցած 9 ամսում արտադրվել է 5096 միլիոն քառակուսի մետր գործվածքեղեն, 344 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 20,1 միլիոն հատ ժամացույցներ, 3,4 միլիոն հատ ռադիոընդունիչ և ռադիոլա, 1799 հազար հատ հեռուստացույց, 670 հազար հատ սառնարան, 1657 հազար հատ լվացքի մեքենա, 1,2 միլիարդ ռուբլու կահույք և այլն։

★ Նշանակալից չափով ավելացել է կենսամթերքների արտադրությունը։ Անցած 9 ամսում արտադրվել է 1,1 միլիոն տոննա երշիկեղեն, 3,1 միլիոն տոննա միս (պետական ռեսուրսներից), 665 հազար տոննա յուղ, 7,4 միլիոն տոննա անարատ կաթնամթերք, 176 հազար տոննա պանիր, 1,4 միլիոն տոննա ձեթ, 4,8 միլիարդ տուփ պահածո, 1,3 միլիոն տոննա օճառ և այլն։

★ Աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա հա-



մապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 6 տոկոսով, գերակատարվել է արտադրանքի ինքնարժեքի իջեցման 9 ամսվա պլանը, ստացվել է ավելի քան 400 միլիոն ռուբլու արտապլանային խնայողություն։

★ Անցած 9 ամսում պետական պլանների կատարման գործում նշանակալից հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման 9 ամսվա պլանը կատարված է 102,7 տոկոսով։ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի թողարկումն աճել է 10,7 տոկոսով։

★ Մեր ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության արտադրանքը այս տարվա 9 ամսում, անցյալ տարվա 9 ամսվա համեմատությամբ, ավելացել է 30 տոկոսով, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 15 տոկոսով, շինանյութերինը՝ 15 տոկոսով և այլն։

★ Անցած 9 ամսում մեր ռեսպուբլիկայում արտադրվել է 150,8 հազար տոննա հանքային պարարտանյութ, 3201 տոննա արհեստական և սինթետիկ թել, 26 հազար տոննա կաուստիկ սոդա, 853 հազար հատ ավտոդող, 2061 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

★ Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 505 հազար կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչ, 3157 հազար կիլովատ-ամպեր ուժային տրանսֆորմատոր, 9306 հատ էլեկտրազոդման սարքավորում, 6295 հատ մետաղահատ հաստոց, 750 հատ դարբնոցամամլակային մեքենա, 21,6 միլիոն ռուբլու ավտոմատացման միջոցների սարքեր և դրանց պահեստամասեր, 38,3 հազար հատ կենտրոնախույս պոմպ։

★ Թեթև արդյունաբերության աշխատողները 9 ամսում երկրին տվել են 45 միլիոն քառակուսի մետր բամբակե գործվածք, 4480 հազար քառակուսի մետր բրդե գործվածք, 5309 հազար քառակուսի մետր մետաքսե գործվածք, 30,2 միլիոն զույգ գուլպեղեն։

★ Բնակչության կարիքների համար 9 ամսում արտադրվել է 88,2 միլիոն քառակուսի դեցիմետր խրոմի կաշի, 4729 հազար զույգ կաշվե կոշկեղեն, 1534 հազար հատ ամեն տեսակ ժամացույց, 10,2 միլիոն ռուբլու կահույք։

★ Մեր ռեսպուբլիկայում գնալով ավելանում է սննդամթերքների արտադրությունը։ Անցած ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, մսի արտադրությունը (հումքի պետական ռեսուրսներից) կազմում է 104 տոկոս, երշիկեղենը՝ 105 տոկոս, յուղինը՝ 117 տոկոս, ձեթինը՝ 126 տոկոս։

# ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՌԱԶՄԱԿԱՆ ԾԱԽՍԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Պատերազմը ժողովուրդների համար միշտ էլ եղել է աղքատության, ծանր տառապանքների, մահվան, հարյուրավոր տարիների կուտակած նյութական և կուլտուրական արժեքների ոչնչացման պատճառը: Չնայած դրան, ԱՄՆ-ի իմպերիալիստները և նրանց համախոհները վիթխարի միջոցներ են ծախսում նոր համաշխարհային պատերազմ նախապատրաստելու և սանձազերծելու համար: Ահա օրինակներ այդ մասին.

Անցած 48 տարվա ընթացքում ԱՄՆ-ի զինված ուժերը, մարտական պատրաստականությունը պահպանելով նաև խաղաղ ժամանակ, ավելացել են ավելի քան 15 անգամ։

Բրաղեկ տնտեսագետները հաշվել են, որ ամեն տարի ռազմական մրցավազքի բեռը ժողովուրդների վրա նստում է 120 միլիարդ դոլար։ Դրանից 100 միլիարդը ընկնում է ՆԱՏՕ-ի երկրներին։ Այդ գումարով կարելի է կառուցել 10 միլիոն տուն, բնակարաններով ապահովել 40—50 միլիոն մարդու, կառուցել 50 հազար դպրոց, 10 հազար հիվանդանոց։

Իմպերիալիստական երկրները մեծ միջոցներ են ծախսում պատերազմի պրոպագանդայի վրա։ Միայն Պենտագոնը այդ նպատակի համար տարեկան ծախսում է 1,6 միլիոն դոլար։

1949 թվականից մինչև 1962 թվականը ՆԱՏՕ-ի մասնակից երկրները ռազմական նպատակների համար ծախսել են մոտ 760 միլիարդ դոլար։ Այդ վիթխարի գումարը կրկնակի անգամ գերազանցում է ԱՄՆ-ի տարեկան ազգային եկամուտը։

1946—1962 թվականներին ԱՄՆ-ի ուղղակի և անուղղակի ռազմական ծախսերը կազմեցին մոտ 900 միլիարդ դոլար, համարյա այնքան, որքան բոլոր կապիտալիստական երկրները կորցրել էին երկրորդ համաշխարհային պատերազմում։

Կապիտալիստական երկրների մեջ ԱՄՆ-ը պահում են թվով ամենամեծ զինված ուժերը՝ 1962 թվականի տվյալներով ավելի քան 2,8 միլիոն մարդ և ամենախոշոր ռազմական արտադրություն։ Ռազմական նպատակների համար կատարվող ծախսերը (ներառյալ նաև այսպես կոչված «տնտեսական օգնությունը») 1962—1963 ֆինանսական տարում կազմում են 58 միլիարդ դոլար, կամ բյուջետային ամբողջ հատկացումների 63 տոկոսը։

Անգլիայի ռազմական ուղղակի ծախսերը 1962—1963 ֆինանսական տարում կազմեցին 1 միլիարդ 740 միլիոն ֆունտ ստերլինգ, իսկ 1963—1964 ֆինանսական տարում կազմելու է 1 միլիարդ 861 միլիոն ֆունտ ստերլինգ։

Արտակարգ արագ տեմպերով են աճում ռազմական ծախսերը ԳՖՌ-ում, որտեղ 1962 թվականի բյուջեով միայն ուղղակի ռազմական ծախսերը կազմեցին 16,5 միլիարդ մարկ, 1958 թվականի 6 միլիարդ 900 միլիոն մարկի փոխարեն։ 1955 թվականից հետո ընկած ժամանակամիջոցում նոր պատերազմի նախապատրաստման վրա կատարված ծախսերը աճել են ավելի քան 170 անգամ։

Ֆրանսիայի 1963 թվականի ռազմական բյուջեն, անցյալ տարվա 17,2 միլիարդ ֆրանկի փոխարեն, կազմում է 18,5 միլիարդ ֆրանկ, որը հավասար է բյուջետային ամբողջ ծախսի 25 տոկոսին։

Պետությունների ռազմական ծախսերի միայն մեկ տոկոսով կարելի է կառուցել և լրիվին սարքավորել ավելի քան հարյուր համալսարան այն երկրներում, որոնք բարձրորակ մասնագետների սուր կարիք են զգում։

1962 թվականի հոկտեմբերի տվյալներով ՆԱՏՕ-ի երկրներից Ֆրանսիայի զինված ուժերում կար 705 հազար մարդ, Անգլիայի զինված ուժերում՝ 415 հազար, Թուրքիայի զինված ուժերում՝ 455 հազար, Իտալիայի զինված ուժերում՝ 470 հազար, ԳՖՌ-ի զինված ուժերում՝ 353 հազար և այլն։

ԱՄՆ-ը աշխարհը ծածկել են ռազմական բազաների ցանցով։ Այդ բազաները տարածված են Միդուեի, Գուամ, Մարիանյան կղզիներում, Ճապոնիայում, Հարավային Կորեայում, Տայվան կղզում, Ֆիլիպիններում, Տաիլանդում, Հարավային Վիետնամում, Պակիստանում, Սաուդյան Արաբիայում, Թուրքիայում, Հունաստանում, Լիբիայում, Իտալիայում, Մարոկկոյում, Իսպանիայում, Պորտուգալիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում, Անգլիայում, Նորվեգիայում և այլ երկրներում։

Ամերիկյան ռազմա-օդային և ռազմա-ծովային ուժերն այժմ ունեն մոտավորապես 3400 միավոր ստրատեգիական զենք՝ խոշոր ինքնաթիռներ և հրթիռներ, որոնք կարող են տանել 22 միլիարդ տոննա տրոտիլի համարժեքով մարտական գլխիկներ։

ԱՄՆ-ը ուրիշի տերիտորիաներում ունեն 1400 ռազմական

բազա։ Այդ բազաների սիստեմում հիմնական հենարանի դեր են կատարում ռազմա-օդային բազաները, որոնց թիվը հասնում է 360-ի։

**Ա**րևմուտքի հեղինակավոր գիտնական-ատոմագետների գնահատմամբ ներկայումս ատոմային զենքի համաշխարհային պաշարները կազմում են 250 հազար մեգատոնն։ Այդ իր ուժով հավասար է 12,5 միլիոն այնպիսի ռումբի, որը նետվել էր Հիրոսիմայի վրա։ Այսպիսով մեր մոլորակի յուրաքանչյուր բնակչի համար պահեստված է ավելի քան 80 տոննա պայթուցիկ նյութ։

**Ա**մերիկյան մի ժուռնալիստի հաշվարկներով «RS—70» ինքնաթիռի պատրաստման համար ծախսվում է 150 միլիոն դոլար, որը հավասար է ժամանակակից 37 դպրոցի արժեքի։ Ատոմային մի սուզանավն արժե 100 միլիոն դոլար, որով կարելի է կառուցել 25 հիվանդանոց, «Յուպիտեր» մարկայի մի հրթիռի փոխարեն կարելի է կառուցել 60 բնակելի տուն։

**Ա**ՄՆ-ի հազարից ավելի խոշոր ձեռնարկություններ զբաղված են ռազմական պատվերների կատարմամբ։ Ավիացիայի բնագավառում և հրթիռային գործում բոլոր աշխատողների համարյա 95 տոկոսը, նավաշինության բնագավառի աշխատողների 60 տոկոսը և կապի արդյունաբերության բոլոր աշխատողների 40 տոկոսը այս կամ այն կերպ կախված են ռազմական կարիքների համար Պենտագոնի ծախսերից։

**Պ**ատերազմներից և սպառազինությունների մրցավազքից շահում են ամբողջ աշխարհի մոնոպոլիստները և առաջին հերթին ամերիկյան մոնոպոլիստները։ Առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում ամերիկյան մոնոպոլիստները ամեն տարի ստանում էին 33—34 միլիարդ դոլար շահույթ, որը տասը անգամ շատ էր, քան մինչպատերազմյան տարիների ստացածը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի հինգ տարիների ընթացքում ամերիկյան մոնոպոլիաները իրենց սեյֆերում դրեցին ոչ պակաս քան 150 միլիարդ դոլար շահույթ։

---



# ՆՈՐ ՏՎՅԱԼՆԵՐ ՍՍՌՄ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Անընդհատ աճում է սովետական երկրի բնակչությունը։ Այժմ Սովետական Միության բնակչության թիվը կազմում է 225 միլիոն մարդ։

Յուրաքանչյուր մեկ րոպեում մեր երկրում ծնվում է 6 մարդ, ամեն օր՝ 9.000 մարդ, ամեն ամիս՝ 270.000 մարդ, ամեն տարի՝ 5 միլիոն մարդ։ Վերջին տասը տարիներին ՍՍՌՄ-ի բնակչությունը ավելացել է 35 միլիոնով։ Այդ աճը հավասար է Շվեդիայի, Նորվեգիայի, Դանիայի, Ֆինլանդիայի, Հունաստանի և Ավստրիայի բնակչության թվին միասին վերցրած։ Երկրագնդի յուրաքանչյուր տասներորդ բնակիչը ապրում է ՍՍՌՄ-ում։

Մեր երկրում բնակչության ընդհանուր մահացությունը, 1913 թվականի համեմատությամբ, այժմ իջել է 4 անգամ, իսկ մանկական մահացությունը՝ 8,5 անգամ։ Սովետական Միությունում մարդու միջին տարիքը հասնում է 70-ի։

Հաշվումները ցույց են տալիս, որ ՍՍՌՄ-ում այժմ ծնվող յուրաքանչյուր հազար բնակչից 21-րդ դարում կապրեն 900 մարդ։ Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի հարյուրամյակը կնշեն այժմ ծնվող յուրաքանչյուր հազար բնակչից ավելի քան 800 մարդ։

Սովետական Միությունում 117 միլիոն մարդ ապրում է 1.763 քաղաքներում և 3.255 քաղաքատիպ ավաններում, իսկ 108 միլիոնը՝ 700.000 գյուղական բնակավայրերում։

Սովետական քաղաքների ամենաշատ բնակչությունը 1963 թվականի հունվարի 1-ի տվյալներով եղել է Մոսկվայում՝ 6,4 միլիոն մարդ, Լենինգրադում՝ 3,6 միլիոն, Կիևում՝ 1,2 միլիոն, Բաքվում՝ 1,1 միլիոն մարդ, Գորկիում, Տաշքենդում, Խարկովում, և Նովոսիբիրսկում՝ մեկ միլիոն մարդ։ Եթե 1939 թվականին ՍՍՌՄ-ի ասիական մասում ապրում էր 34 միլիոն մարդ, ապա այժմ ապրում է 53 միլիոն մարդ, մեր մեծ ընտանիքի մոտ մեկ քառորդ մասը։

ՍՍՌՄ բնակչության կազմը այժմ այսպիսին է. բանվորներ և ծառայողներ՝ 165,6 միլիոն կամ ամբողջ բնակչության 73,6 տոկոսը, կոլտնտեսային գյուղացիություն՝ 59,2 միլիոն կամ 26,3 տոկոսը, գյուղացի մենատնտեսներ՝ 0,2 միլիոն կամ 0,1 տոկոսը։ Երկրի ամբողջ բնակչությունից 105 միլիոնը զբաղված է ժողովրդական տնտեսության մեջ։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սովետական Հայաստանի 43-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին— *Հեռագիր Հայաստանի Ռազմական-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. Լենին— *Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. Խրուշչով— *Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին, Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, Հայպետհրատ, 1961։*

Յա. Ն. Զարոբյան— *Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

*Մեծ Հոկտեմբերի 46-րդ տարեդարձը, նյութեր զրույցների և զեկուցումների համար, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1963 թվականի 20-րդ համարում։*

## 2. Ժողովրդական տնտեսության հզոր վերելքը Սովետական Հայաստանում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. Ե. Քոչինյան— *Հայաստանը յոթնամյակում, Հայպետհրատ, 1960։*

Գ. Ա. Բաղրամյան— *Քիմիական արդյունաբերության զարգացումը Հայաստանում, Հայպետհրատ, 1960։*

Գ. Հարությունյան— *Հայկական ՍՍՌ մեքենաշինական արդյունաբերությունը յոթնամյակում, Հայպետհրատ, 1958։*



Վ. Դարյան— *Թեթև արդյունաբերության զարգացումը Սովետական Հայաստանում, Հայպետհրատ, 1960։*

Ա. Կ. Այրումյան— *Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության վերելքը սովետական իշխանության տարիներին, «Գիտելիք» ընկերության հրատարակություն, 1960։*

Լ. Ս. Բիշարյան— *Այգեգործության և պտղաբուծության զարգացումը Հայաստանում, «Գիտելիք» ընկերության հրատարակություն։*

## 3. Գիտության, գրականության, արվեստի, կուլտուրայի և ժողովրդական կրթության ծաղկումը Սովետական Հայաստանում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Հ. Համբարձումյան— *Գիտությունը Հայաստանում 40-տարում, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակչություն, 1960։*

Շ. Ա. Սիմոնյան— *Սովետական Հայաստանի ժողովրդական կրթության նվաճումները 40-տարում, Հայպետուսմանկհրատ, 1961։*

Ց. Խաչատրյան— *Հայ ժողովրդի կուլտուրայի զարգացումը սովետական իշխանության տարիներին, Գիտությունների ակադեմիայի «Տեղեկագիր», էջ 15—25, 1958։*

Ս. Նանասյան— *Առողջապահությունը Սովետական Հայաստանում, Հայպետհրատ, 1961։*

## 4. Քիմիական արդյունաբերության դերը երկրի գյուղատնտեսության զարգացման և բնակչության բարեկեցության բարելավման բնագավառներում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նամակը քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների, գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտների, շինարարական կազմակերպությունների, քիմիական մեքենաշինության գործարանների, ինչպես նաև գյուղատնտեսության համար քիմիական արտադրանք թողարկող արդյունաբերության մյուս ճյուղերի բոլոր բանվորներին, բանվորուհիներին, ինժեներներին ու տեխնիկներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 6-ի համարում։*

Ս. Խեոսյան— *Քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարները, հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարում։*

Գ. Ս. Բաղրամյան— *Քիմիական արդյունաբերության զարգացումը Հայաստանում, Հայպետհրատ, 1960։*

## 5. Սերմացուների և պարարտանյութերի մասին հոգ տանելը առատ բերքի երաշխիքն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Լրիվին օգտագործել հացահատիկի արտադրության ավելացնելու ռեզերվները, ընկեր Ն. Ս. Խրուշչովի զրույցը Ուկրաինայի հարավային մարզերի գյուղատնտեսության աշխատողների հետ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 2-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչով— *Ստեղծել երաշխավորված բարձր բերքի ստացման կայուն բազա, ճառ, արտասանած Հյուսիսային Կովկասի գյուղատնտեսության աշխատողների Կրասնոդարի խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 3-ի համարում։*

Յա. Ն. Զարոբյան— *Ճառ, «Հարուստ հեկտարի համար» մրցության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 23-ի համարում։*

*Բարձրացնել հետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարի առաջնորդողը։*

*Գալիք տարվա բերքի երաշխիքը, «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 5-ի առաջնորդողը։*

## 6. Կազմակերպված անցկացնել անասունների ձմեռային շրջանը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Երկու տարում հաղթահարենք տնտեսապես թույլ կոլտնտեսությունների հետ մնալը, Վինիցայի մարզի Խմելնիցկու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մասնագետների և բոլոր աշխատողների նամակը գյուղատնտեսության բոլոր աշխատավորներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 12-ի համարում։*

*Ֆերմաները ապահովել առատ կերով, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի 9-րդ համարում։*

*Անասնաբուծության արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացման արդյունավետությունը, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի 9-րդ համարում։*

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ








## ԱՄԵՐԻԿՅԱՆ «ՕԳՆՈՒԹՅՈՒՆԻՑ» ՀԵՏՈ

«Պերեց» ամսագրից

# ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի 1964 թվականի բաժանորդագրությունը.

1 ամիսը— 15 կոպեկ
6 ամիսը— 90 կոպեկ
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպեկ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

«ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ» ամսագրին.

1 ամիսը— 40 կոպեկ
6 ամիսը— 2 ռուբ. 40 կոպեկ
12 ամիսը— 4 ռուբ. 80 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел идеологической работы ЦК КП Армении

АГИТАТОРИ БЛОКНОТ

№ 21

1963

*ՎՖ 12239* *Պատվեր 956* *Տիրաժ 7961*

*Հանձնված է արտադրության 25/X 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 31/X 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.* Ինդեքս՝ 77704